Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք:

ՀԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի
# ԲԼՈԿՆՈՏ

№ 18 ՍԵՊՏԵՄԲԵՐ 1959

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Խմբագրության հասցեն— Երևան, ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ: Հեռախոս 2—52—78:



# ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ՊԱՅՔԱՐՈՒՄ ԵՆ ՏԵԽՆԻԿԱԿԱՆ ՊՐՈԳՐԵՍԻ ՀԱՄԱՐ

*Խ. ԴՐԱՄԲՅԱՆ*

ՍՄԿՊ XXI համագումարի որոշումները հանդիսանում են կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման մեծագույն ծրագիրը: Այդ որոշման մեջ պարզ ու որոշակի նշված են մեր երկրում կոմունիստական հասարակության կառուցման տեխնիկական պրոգրեսի գլխավոր ուղղությունը: Երկրի էլեկտրիֆիկացումը, ժողովրդական տնտեսության քիմիացումը, ժամանակակից մեքենաների ու սարքավորումների արմատավորումը, արտադրության կոմպլեքսային մեքենայացումը և ավտոմատացումը նոր հեռանկարներ են բացում արդյունաբերության և ամբողջ ժողովրդական տնտեսության զարգացման գործում:

Յոթնամյակում անցկացվող տեխնիկական վերակառուցումը շոշափում է նյութա-





կան արտադրության բոլոր հիմնական ճյու-
ղերը։ Դրանց իրականացումը ամենից ա-
ռաջ պայմանավորված է էլեկտրիֆիկացիա-
յի և մեքենաշինության զարգացմամբ։
Ներկայումս էլեկտրոնային տեխնիկա-
յի կիրառման միջոցով անցումը դեպի կոմպ-
լեքսային մեքենայացումը և արտադրության
ավտոմատիկ ղեկավարումը կազմում է ժա-
մանակակից տեխնիկական պրոգրեսի բը-
նորոշ գիծը։ Արտադրության կոմպլեքսա-
յին մեքենայացումը և ավտոմատացումը
լայն հնարավորություն են ստեղծում աշ-
խատանքի արտադրողականության շեշտա-
կի բարձրացման և ժողովրդի նյութական
բարեկեցության հետագա բարելավման
համար։
Պարտիայի XXI համագումարից հետո
անցած ժամանակաշրջանում, հատկապես
ՍՄԿՊ Կենտկոմի Հուլիսյան պլենումից հե-
տո, ռեսպուբլիկայի բազմաթիվ արդյունա-
բերական ձեռնարկությունների կոլեկտիվ-
ներ, պարտիական կազմակերպությունների
ղեկավարությամբ իրագործեցին մի շարք
միջոցառումներ արդյունաբերության կարե-
վորագույն ճյուղերում նոր տեխնիկայի ար-
մատավորման, արտադրական պրոցեսների
մեքենայացման ու ավտոմատացման ուղ-



ղությամբ։ Ընթացիկ տարում այդ ձեռնար-
կումների կիրառումը ապահովեց տնտեսու-
թյան զարգացման բարձր տեմպերը, բարձ-
րացրեց աշխատանքի արտադրողականու-
թյունը և արտադրության կուլտուրան։
Երևանի Ալրաղաց կոմբինատի կոլեկ-
տիվը վերջին ամիսների ընթացքում լուրջ
աշխատանք է կատարել առաջավոր տեխ-
նոլոգիայի արմատավորման ուղղությամբ,
մասնավորապես ավելացել է հղկող սիս-
տեմների քանակը և կորատող սիստեմների
գլանների արագությունը։ Միաժամանակ ա-
ղացվածքում ավելացված են ռազմոլների
սիստեմի թիվը չորսից մինչև վեցի, ջարդող
սիստեմներինը՝ 5-ից մինչև 6-ի։ Ավե-
լացել են նաև առանձին սիստեմների արա-
գությունը մինչև երկու անգամ։ Նշված մի-
ջոցառումները հնարավորություն ստեղծե-
ցին օրվա արտադրանքը ավելացնել մինչև
20 տոկոսով, պահպանելով արտադրան-
քի որակը։
Նշանակալից աշխատանք է կատարված
արտադրության օժանդակ գործողություն-
ների աշխատատար պրոցեսները մեքենա-
յացման ենթարկելու ուղղությամբ։ Համա-
գումարից հետո մեքենայացման է ենթարկ-
վել ալրի բարձման և միջպահեստային տե-

ղափոխման գործողությունը։ Այս միջոցա-
ռումների շնորհիվ կոմբինատի պահեստա-
տարրողության աշխատանքների մեքենայա-
ցումը բարձրացավ 33 տոկոսով։ Մեքենա-
յացված է նաև երկաթուղային վագոններից
և ավտոմեքենաներից հացահատիկի բեռ-
նաթափման հետ կապված գործողություն-
ները։ Այս և մի շարք այլ միջոցառումների
կիրառման շնորհիվ մեքենայացումը կոմ-
բինատի գծով բարձրացավ 95 տոկոսով,
իսկ բեռնման և բեռնաթափման աշխատան-
քի հետ կապված աշխատատար պրոցես-
ների մեքենայացումը՝ 75 տոկոսով։
Այդպիսի կատարելագործումներ են կա-
տարվում նաև Ձերժինսկու անվան Դազգա-
հաշինական գործարանում։ Գործարանում
առանձին մասերի արտադրությունը ար-
դեն կատարվում է հարահոս գծերի մի-
ջոցով։ Այստեղ ներդրված են բար-
ձրր արտադրողականություն ունեցող ագ-
րեգատային մի շարք հաստոցներ։ Այս
բոլորը հնարավորություն ստեղծեցին բարձ-
րացնել աշխատանքի արտադրողականու-
թյունը 2 անգամ։ Վերջին ժամանակներս
գործարանում շահագործման հանձնվեց
քայլող կոնվեյերը, որը զգալիորեն հեշտաց-
րեց հաստոցների հավաքման աշխատան-



քը։ Արտադրության մեջ ներդրված են նաև
բարձր արտադրողականության սարքավո-
րումներ, որոնք զգալիորեն բարձրացնում
են աշխատանքի արտադրողականությունը։
Այս բոլորը հնարավորություն տվեցին
զգալիորեն իջեցնելու թողարկվող հաստոց-
ների ինքնարժեքը։
Կենտկոմի Հունիսյան պլենումից հետո
գործարանի ինժեներա-տեխնիկական անձ-
նակազմը ռեսպուբլիկայի Ժողտնտխորհի
հատուկ կոնստրուկտորական-տեխնոլոգիա-
կան բյուրոյի կոլեկտիվի հետ միասին մեծ
աշխատանք են կատարում միանգամայն
նոր, բարձր արտադրողականության ավտո-
մատ և կիսաավտոմատ հաստոցների ստեղծ-
ման ուղղությամբ։
Տեխնիկական պրոգրեսի հարցում լավ
արդյունքների է հասել հիդրոպոմպերի գոր-
ծարանը, որը մի խումբ գործարանների
հետ միասին հանդես եկավ ռեսպուբլիկա-
յի արդյունաբերական ձեռնարկություննե-
րին ուղղված կոչով՝ յոթնամյակը ժամկե-
տից շուտ կատարելու համար։ Կոլեկտիվն
իր ստանձնած պարտավորություններն ըն-
թացիկ տարվա անցած ամիսներում պատ-
վով կատարեց ի հաշիվ ներքին ռեզերվնե-
րի լավագույն օգտագործման։ Այս տարի

արտադրության առաջավորների և ինժենե-
րա-տեխնիկական աշխատողների ջանքե-
րով հաջողությամբ ավարտվեց նոր կոնս-
տրուկցիայի միաբլոկային պոմպերի մշա-
կումը և բաց թողնվեց այդպիսի պոմպերի
մեկ փորձնական պարտիա։ Այդ կոնստրուկ-
ցիան արտադրության մեջ մասսայական
կարգով ներդնելիս միայն մետաղի խնայո-
ղության հաշվին 1959 թվականի ընթաց-
քում հնարավոր կլինի արտադրել 4.000,
իսկ 7-ամյակի ընթացքում 26.000 լրացու-
ցիչ պոմպ։

Համագումարից հետո տեխնիկական պրո-
գրեսի ուղղությամբ զգալի աշխատանք է
կատարել Ավտոպահեստամասերի գործա-
րանի կոլեկտիվը։ Գործարանում արմատա-
պես փոխվել է ավտոպահեստամասերի ջեր-
մային մշակման մեթոդը։ Ի տարբերու-
թյուն պահեստամասերի ցեմենտապատ-
մանը կոշտ կարբյուրատորներում, այստեղ,
ռեսպուբլիկայում առաջին անգամ կիրառ-
վեց հեղուկ ցիանացման մեթոդը, որը
խիստ կերպով կրճատում է ջերմամշակման
ժամանակը և բարձրացնում նրա որակը։
Այդ պրոգրեսիվ տեխնոլոգիայով միայն ե-
րեք մասերի մշակումը տարեկան տա-
լիս է 400 հազար ռուբլու տնտեսում։ Ինժե-



ներա-տեխնիկական աշխատողների կող-
մից առաջարկված է մոտակա ժամանակ-
ներում արտադրությունում կիրառել գազա-
յին ցիանացման մեթոդը, որը մի քանի
անգամ կբարձրացնի աշխատանքի արտա-
դրողականությունը։ Առաջին անգամ գոր-
ծարանում հարահոս գծերում տեղադրվում
է բարձր արտադրողականության երկու դիր-
քային կիսաավտոմատ ատամնաֆրեզերա-
յին դազգահներ, որոնք հին դազգահների
համեմատությամբ բարձրացնում են աշխա-
տանքի արտադրողականությունը 4 անգամ։
Շատ դազգահների վրա լայն կերպով տե-
ղադրվում են արագ գործող սեղմիչ հար-
մարանքներ, որոնց շնորհիվ մոտ 40 տո-
կոսով կրճատվում է օժանդակ աշխատա-
ժամանակը դազգահների վրա։ Այս և մի
շարք այլ միջոցառումների շնորհիվ գործա-
րանը այս տարվա առաջին կիսամյակի ըն-
թացքում, առանց խոշոր կապիտալ ներ-
դրումների, կարողացավ ավտոպահեստա-
մասերի արտադրության ծավալը, անցյալ
տարվա համապատասխան ժամանակաշըր-
ջանի համեմատությամբ, ավելացնել 30,7
տոկոսով։ Այստեղ բնորոշն այն է, որ այդ
աճի 19 տոկոսը կատարված է աշխատան-

քի արտադրողականության բարձրացման հաշվին։

Տեխնիկական պրոգրեսի համար մղվող պայքարում նորանոր ձևեր է ընդունում սոցիալիստական մրցությունը։ Այս տեսակետից ուշադրության է արժանի Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանի և նրան կից գիտահետազոտական ինստիտուտի ֆիլիալի պարտիական կազմակերպության փորձը, որը այս տարի հանդես եկավ հայրենասիրական նախաձեռնությամբ՝ կոչ անելով ռեսպուբլիկայի բոլոր արդյունաբերական ձեռնարկությունների և գիտահետազոտական ինստիտուտների կոլեկտիվներին մաքսիմալ չափով կրճատելու նոր տեսակի կոնստրուկցիաների ինչպես մշակման, այնպես էլ ներդրման ժամանակաշրջանը։

Այս հայրենասիրական նախաձեռնությունը՝ որպես գիտության և արդյունաբերության համագործակցության նոր ձևի, լայն արձագանք գտավ ռեսպուբլիկայի գիտահետազոտական և արդյունաբերական ձեռնարկությունների պարտիական կազմակերպությունների կողմից։

Ի պատասխան այս կոչի մաթեմատիկական մեքենաների ինստիտուտի կոլեկտիվը,



Լենինի անվան էլեկտրամեքենաշինական
գործարանին կից գիտահետազոտական
ինստիտուտի ֆիլիալի հետ միասին՝ ալյու-
մինի գործարանի կոլեկտիվի ակտիվ մաս-
նակցությամբ, պարտավորություն վերցրին
մշակելու և գործարանում ներդնելու ալյու-
մինի էլեկտրոլիզի վաննաների ավտոմա-
տացումը։ Ներկայումս այս աշխատանքնե-
րը հաջողությամբ իրականացվում են։

Համեմատաբար կարճ ժամանակամիջո-
ցում Լենինի անվան էլեկտրամեքենաշինա-
կան գործարանի և ինստիտուտի ֆիլիալի
կողմից մշակվեց և արտադրության մեջ
ներդրվեց ուժային տրանսֆորմատորների
բեռնվածության տակ լարվածության ավ-
տոմատիկ կարգավորման փորձնական
պարտիան։

Հայաստանի Կոմունիստական պարտիա-
յի Կենտրոնական Կոմիտեի կողմից հավա-
նության արժանացավ Լենինի անվան էլեկ-
տրամեքենաշինական գործարանի կոլեկ-
տիվի նախաձեռնությունը ռեսպուբլիկա-
յում օգոստոսի 5-ից տեխնիկական պրո-
գրեսի միամսյակ անցկացնելու մասին։
Չնայած ամիսը դեռ չի վերջացել և ար-
դյունքները չեն ամփոփված, սակայն
միամսյակի ընթացքը ցույց է տալիս, թե

որքան է աճել մեր բանվորների, ինժեներա-տեխնիկական աշխատողների ու ծառայողների ստեղծագործական նախաձեռնությունը և պատրաստակամությունը ՍՄԿՊ Կենտկոմի Հունիսյան պլենումի որոշումների կատարման ուղղությամբ։

Լենինականի Տեքստիլ կոմբինատում 15 օրվա ընթացքում ստացվել է 53 առաջարկություն, որի 50 տոկոսը ուղղված է արտադրական պրոցեսների և սարքավորումների ավտոմատացմանը և մեքենայացմանը։ Այսպես, օրինակ, կոմբինատի մի շարք ռացիոնալիզատորներ՝ Ն. Օռլովը, Ա. Դիկարյովը, Մ. Սահակյանը և մյուսները առաջարկել են մի հատուկ սարք, որը դրվելով բամբակազտիչ մեքենայի վրա փոխարինում է 35 բանվորի աշխատանք։

Տեխնիկական պրոգրեսի միամսյակը հաջող է ընթանում Ժամացույցի, Լենինի անվան էլեկտրամեքենաշինական, Հիդրոպոմպերի, Սարքաշինական, Կիրովի անվան գործարաններում և շատ այլ ձեռնարկություններում։

---



# ԱՇՆԱՆԱՑԱՆԸ ԿԱՏԱՐԵՆՔ ԱԳՐՈՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԲԱՐՁՐ ՄԱԿԱՐԴԱԿՈՎ

ՊԱՐԳԵՎ ԱՄԻՐՅԱՆ

Հայտնի է, որ մեր ռեսպուբլիկայի պայմաններում աշնանացանը միշտ էլ բարձր բերք է տվել, քան գարնանացան հացահատիկային կուլտուրաները։ Օրինակ, ընթացիկ տարում Աղինի շրջանի Ջորաշեն գյուղի կոլտնտեսությունը իր ունեցած 167 հեկտար աշնանացանի յուրաքանչյուր հեկտարից ստացել է 22 ցենտներ, իսկ գարնանացան ցորենի յուրաքանչյուր հեկտարից՝ 12,5 ցենտներ, գարուց՝ 13,7 ցենտներ։

Նույն շրջանի Վերին Ջրափի գյուղի կոլտնտեսությունը 140 հեկտար աշնանացանի ամեն մի հեկտարից ստացել է 18 ցենտներ ցորեն, իսկ 45 հեկտար գարնանացան ցորենի յուրաքանչյուր հեկտարից միայն 10 ցենտներ, գարու 38 հեկտարից միջինը 13 ցենտներ։ Ներքին Ջրափի գյուղի կոլտնտե-

սուլթյունը իր ունեցած 178 հեկտար աշնա-
նացանի յուրաքանչյուր հեկտարից ստացել
է 16 ցենտներ բերք, իսկ 60 հեկտար գար-
նանացան ցորենից՝ 11 ցենտներ։
Այդպիսի ցուցանիշներ գոյություն ունեն
Ախուրյանի, Արթիկի, Կամոյի, Հրազդանի,
Բասարգեչարի և մնացած լեռնային շրջան-
ների կոլտնտեսություններում, իսկ կիսա-
լեռնային և դաշտային շրջաններում, որտեղ
կլիման անհամեմատ չոր է ու տաք աշնա-
նացանը համեմատած գարնանացան հաս-
կավոր հացահատիկային կուլտուրաների
հետ, հեկտարին տալիս է կրկնակի, եռակի
չափով բերք։
Այդ է պատճառը, որ ռեսպուբլիկայում
աշնանացանի տարածությունը գարնանացա-
նի համեմատությամբ կրկնապատկված է։
Այս տարի ռեսպուբլիկայի կոլտնտեսու-
թյունները կատարելու են 139 հազար հեկ-
տարից ավելի աշնանացան։
Սակայն աշնանացանը այն դեպքում է
բարձր բերք տալիս, երբ այն ցանվում է
լավ նախապատրաստված հողում, բարձրո-
րակ սերմացուով, ցանքի լավագույն ժամ-
կետներում և կիրառվում են ագրոտեխնիկա-
կան կոմպլեքս միջոցառումները։
Սիսիանի շրջանի Բռնակոթ, Սպիտակի



շրջանի Մեծ Պարնի, Ախուրյանի շրջանի
Ոսկեհասկ, Հրազդանի շրջանի Ֆանտան և
այլ շրջանների առաջավոր կոլտնտեսու-
թյունները գործով ապացուցեցին, որ աշնա-
նացանի նախացանքային մշակության աշ-
խատանքների բարձրորակ կատարումը ունի
կարևոր նշանակություն։ Ուսումնասիրու-
թյունները պարզել են, որ ցելը անհրաժեշտ
պայմաններ է ստեղծում խոնավությունը
հողում պահպանելու, մոլախոտերի և գյու-
ղատնտեսական վնասատուների դեմ հաջող
պայքարելու, միկրոօրգանիզմների կենսա-
գործունեության, ինչպես նաև քիմիական
պրոցեսների համար բարենպաստ պայման-
ներ ստեղծելու և վերջապես հողի ֆիզիկա-
կան հատկությունները լավացնելու համար։
Բասարգեչարի, Ախուրյանի, Հրազդանի,
Արթիկի և ուրիշ շրջանների կոլտնտեսու-
թյունները լավ գիտակցելով ցելի կարևոր
դերը աշնանացանի բերքատվության բարձ-
րացման գործում, ամեն տարի կատարում
են ցելի և նրա շերտային մշակության աշ-
խատանքները։ Ներկայումս նրանք աշնա-
նացանի 55—65 տոկոսը կատարում են
լավորակ ցելերի վրա։
Այս տարի մեր կոլտնտեսությունները
աշնանացանի 40—50 տոկոսը պետք է կա-

տարեն խոզան հողերում։ Այդպիսի պայմաններում նույնպես կարելի է բարձր բերք ստանալ, եթե դաշտերը ժամանակին մաքրվեն խոզանի մնացորդներից և ցանքից ոչ պակաս 15—20 օր առաջ դաշտերը պարարտացնեն ու կատարեն խոր հերկ։ Խոզանավարից բարձր բերք ստանալու համար Ախուրյանի, Ստեփանավանի, Արթիկի առաջավոր կոլտնտեսությունները հնձից հետո անմիջապես դաշտերը լրիվին մաքրում են խոզանի մնացորդներից և կատարում երեսվար, դրանով կանխելով հողից խոնավության գոլորշիացումը։ Այնուհետև դաշտերը պարարտացնում են տեղական պարարտանյութերով՝ հեկտարին տալով 25—35 տոննա և կատարում հերկ՝ 25—27 սմ. խորությամբ։

Բացի տեղական պարարտանյութերից, աշնանացանի բերքատվության բարձրացման գործում խոշոր նշանակություն ունեն նաև հանքային պարարտանյութերը։ Փորձերը ցույց են տվել, որ աշնանացան ցորենի և գարու պահանջը խիստ մեծ է սուպերֆոսֆատի նկատմամբ։ Հաշվված է, որ սուպերֆոսֆատը լավացնում է բույսի սննդառության ռեժիմը, մեծացնում է նրա դիմացկունությունը ձմռան ցրտերին, արագացնում է հասունացման փազան և լավացնում է



հատիկի որակը ։ Սուպերֆոսֆատը նպաստում է նաև բույսերի ուժեղ թփակալմանը։ Լավ արդյունք է տալիս սուպերֆոսֆատը, երբ հեկտարին տրվում է 350—400 կիլոգրամ։

Հանքային պարարտանյութերից բերքատվության համար վճռող նշանակություն ունեն նաև ազոտական պարարտանյութերը, որոնց նշանակությունը հանրահայտ է։ Սակայն ազոտական պարարտանյութերը հողի մեջ պետք է մտցվեն սուպերֆոսֆատի և կալիումի հետ որոշակի հարաբերությամբ, ելնելով հողի պահանջից և բույսի զարգացման փազաներից։

Աշնանացանի բերքատվության բարձրացման գործում վճռող նշանակություն ունի սերմացուով ապահովվածությունը։ Ընթացիկ տարվա սերմադաշտերի բարձր բերքատվությունը աշնանացանը ապահովում է սորտային բարձրորակ սերմացուով։

Ամասիայի, Վեդու, Ախուրյանի, Սպիտակի և մի շարք շրջանների առաջավոր կոլտնտեսությունները ժամանակին ապահովվել են լավորակ սերմացուով և ցանքը կատարում են կոնդիցիոն սերմացուներով։ Սակայն առանձին շրջանների որոշ կոլտն-

տնտեսություններ դեռևս լրիվին ապահովված
չեն կոնդիցիոն սերմացուով։

Շրջանային հողային օրգաններր պետք է
լուրջ զբաղվեն սերմացուների զտման և
կոնդիցիայի հասցման գործով։

Այս տարվա աշնանացանի սերմնադաշ-
տերից ստացվող առատ բերքը հնարավորու-
թյուն է ստեղծում լեռնային շրջաններում
լրիվ ապահովել նաև հաջորդ տարվա աշ-
նանացանը սերմացուով։ Աշնանացանի
բերքատվության բարձրացման գործում կա-
րևոր նշանակություն ունի ցանքը ագրոտեխ-
նիկական լավագույն ժամկետում կատարե-
լու միջոցառումը։ Որովհետև այս դեպքում
աշնանացանը լավ թփակալում է և դիմա-
նում է մինչև 20—25 աստիճանի ցրտերին,
իսկ ուշացած, նվազ ցանքերը չեն դիմանում
անգամ 10—13 աստիճանի ցրտերին։ Այդ
բացատրվում է նրանով, որ լավագույն ժամ-
կետում կատարած աշնանացան բույսերը
պահանջվող անհրաժեշտ ժամանակամիջո-
ցում հնարավորություն են ունենում արձա-
կելու խոր արմատներ, զարգանալու և կու-
տակելու բավարար քանակությամբ ածխա-
ջրատներ, պլաստիկ նյութեր, որոնք կարե-
վոր պայման են ձմռան սառնամանիքներին
դիմադրելու համար։



Լեռնային շրջանների համար աշնանացա-
նի լավագույն ժամկետ է համարվում օգոս-
տոսի երկրորդ կեսը, նախալեռնային գոտու
համար սեպտեմբերի առաջին կեսը, իսկ
դաշտային շրջանների համար սեպտեմբերի
երկրորդ կեսը։

Մեր պայմաններում աշնանացանը պետք
է կատարել 40—50 օր առաջ, մինչև նրա
աշնան վեգետացիայի դադարումը։ Այդ
ժամկետներից ուշ կատարած ցանքերը տա-
լիս են պակաս բերք և հաճախ ենթարկվում
են ցրտահարության։

Այդ դրությունը հաշվի առնելով Արթիկի
շրջանի տնտեսությունները անհամեմատ
լավ են նախապատրաստվել աշնանացանին
և համարյա թե ավարտել են աշնանացանի
կատարումը։ Այդ գործում ետ չեն մնում նաև
Սպիտակի, Հրազդանի, Ամասիայի և մի
քանի այլ շրջանների առաջավոր կոլտնտե-
սությունները։

Աշնանացանի բարձր բերքատվությունը
կախված է նաև ցանքի եղանակից։ Վերջին
տարիների փորձը ցույց է տվել, որ խաչա-
ձև և նեղշար ցանքի դեպքում հեկտարից
2—3 ցենտներով ավելի բերք է ստացվում։
Ալավերդու, Բասարգեչարի և այլ շրջանների
առաջավոր կոլտնտեսությունների կողմից





կատարած նեղշար և խաչաձև ցանքերից 20—25 տոկոսով ավելի բերք է ստացվել, քան սովորական եղանակով կատարած ցանքերից։ Այս հանգամանքը թելադրում է, որ աշնանացանը կատարեն նեղշար և խաչաձև եղանակով ու շարքացանները օգտագործեն անխափան։ Շատ շրջաններում աշնանացանը զուգադիպում է հացահատիկի, ծխախոտի, ճակնդեղի, կարտոֆիլի և այլ կուլտուրաների բերքահավաքին ու ցրտահերկին, այդ հանգամանքը հրամայական պահանջ է առաջացնում աշխատել մեծ արտադրողականությամբ ու կազմակերպվածությամբ։

Կոլտնտեսությունների ղեկավարները պետք է օպերատիվ օգնություն ցույց տան արտադրական օղակներին բարձրորակ կատարելու աշնանացանը, կազմեն աշխատանքի օրացուցային գրաֆիկա, այն հաշվով, որ աշխատանքի այսպիսի լարվածության պայմաններում բերքահավաքը, աշնանացանը, ցրտահերկը և մյուս աշխատանքները կատարվի կազմակերպված ձևով, բարձր արտադրողականությամբ և դրանով ամուր հիմքերի վրա դնելու հաջորդ տարվա հացահատիկի և մյուս կուլտուրաների բարձր բերքատվությունը։

---

ՆՅՈՒԹԵՐ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

---

# ԼԱՅՆՈՐԵՆ ԱՐՄԱՏԱՎՈՐԵՆՔ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԴՐԱՄԱԿԱՆ ՎԱՐՁԱՏՐՈՒԹՅՈՒՆԸ ԿՈԼՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ

ՊԵՐՃ ԱՄԻՐՅԱՆ
Գիտական աշխատող

Պարտիայի և կառավարության որոշումները գյուղատնտեսության շեշտակի վերելքի, նրա բոլոր ճյուղերի համընթաց զարգացման (1953 թ. սեպտեմբեր) և գյուղատնտեսական արտելի կանոնադրության, կոլտնտեսականների ավանսավորման ու աշխատանքի լրացուցիչ վարձատրության մասին (1956 թ. մարտ), ունեցան խոշոր նշանակություն կոլտնտեսականների ստեղծագործական նախաձեռնության զարգացման և կոլտնտեսություններում վարձատրման ձևերի բարելավման, նրանց կատարելագործման ու մշակման ուղղությամբ։

Անշեղորեն կենսագործելով պարտիայի և

կառավարության կողմից ընդունած այդ և հետագա մի շարք այլ որոշումները, անցած ժամանակաշրջանում զգալիորեն ամրապնդվեցին մեր երկրի կոլտնտեսությունների էկոնոմիկան, նպաստեցին գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացմանը, կոլտնտեսությունների ապրանքային արտադրության մեծացմանը։

Բավական է նշել, որ մեր ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների դրամական եկամուտները 1958 թվականին կազմեցին մեկ միլիարդ 25 միլիոն ռուբլի, 1953 թվականի 532 միլիոն 700 հազար ռուբլու դիմաց։ Այդ նույն ժամանակամիջոցում կոլտնտեսությունների անբաժանելի ֆոնդի գումարը ավելացավ ավելի քան 710 միլիոն ռուբլով և 1959 թ. հունվարի մեկին կազմեց մեկ միլիարդ 720 միլիոն ռուբլի։ Գոհացուցիչ է նշել՝ որ ի կենսագործումն պարտիայի Կենտրոնական Կոմիտեի 1958 թվականի Փետրրվարյան պլենումի որոշման, կոլտնտեսությունները ՄՏԿ-ներից միայն 1958 թվականի ընթացքում գնեցին ավելի քան 64 միլիոն 700 հազար ռուբլու գյուղատնտեսական մեքենաներ և գործիքներ։

Կասկածից վեր է, որ կոլտնտեսությունների էկոնոմիկայի նման աճի ապահովման



գործում զգալի դերը պատկանում է հանրային տնտեսության զարգացման խնդրում կոլտնտեսականների անձնական շահագրգռվածության լենինյան սկզբունքների ավելի լայն կենսագործմանը, առաջին հերթին աշխատանքի վարձատրության ձևերի բարելավման և հետագա կատարելագործման հարցերին։

Ծանոթանալով երկրի մի շարք կոլտնտեսություններում արմատավորված աշխատանքի դրամական երաշխավորված— առանց աշխօրերի վարձատրության ձևի հետ, Գյուղատնտեսության էկոնոմիկայի և կազմակերպման հայկական գիտահետազոտական ինստիտուտը անցյալ տարվանից ձեռնարկեց վարձատրման այդ պրոգրեսիվ ձևի արմատավորմանը ռեսպուբլիկայի մի շարք կոլտնտեսություններում։

1958 թվականի հուլիսին, ինստիտուտի նախաձեռնությամբ և ՀԿՊ Շահումյանի շրջկոմի ակտիվ աջակցությամբ, Ստալինի անվան կոլտնտեսության կոլտնտեսականները քննարկելով վարձատրման այդ պրոգրեսիվ ձևի ներդրման մասին ինստիտուտի և կոլվարչության մշակած միջոցառումները՝ որոշում ընդունեցին անցնելու աշխատանքի

ուղիղ դրամական, առանց աշխօրերի վարձատրության։

Ստալինի անվան կոլտնտեսությունը մեր ռեսպուբլիկայի առաջավոր բազմաճյուղ կոլտնտեսություններից մեկն է։

Աշխատանքի ճիշտ կազմակերպման, հանրային տնտեսության զարգացման գործում կոլտնտեսականների անձնական շահագրգռվածության բարձրացման միջոցով, կոլտնտեսությունում համընթաց կերպով զարգանում են նրա բոլոր ճյուղերը՝ խաղողագործությունը, բանջարաբուծությունը և անասնաբուծությունը։

1958 թվականին կոլտնտեսության դրամական եկամուտը կազմեց 6 միլիոն 500 հազար ռուբլի, կամ 1953 թվի համեմատությամբ ավելացել է մոտ երեք անգամ։ Անբաժանելի ֆոնդը այդ նույն ժամանակամիջոցում ավելացավ 2,3 անգամ և առ 1-ը հունվարի 1959 թվականի կազմեց յոթ միլիոն 757 հազար ռուբլի։

Դրամական եկամուտների աճը հնարավորություն տվեց ոչ միայն զգալի չափով ավելացնելու կոլտնտեսականների վաստակը, այլև լայն թափով ծավալել արտադրական և կուլտուր-կենցաղային օբյեկտների շինարարությունը։



Միայն վերջին տարիների ընթացքում կոլտնտեսությունում կառուցվել է 6 տիպային անասնագոմ, 11 սիլոսային կառուցվածքներ՝ 500 տոննա տարողությամբ, գարաժ՝ ավտոմեքենաների համար, աղոցարան, հյուսնոց, դարբնոց, գրասենյակին կից նիստերի դահլիճ և այլն։ Ցանկապատվել են բոլոր անասնապահական օբյեկտները, ձեռնարկված է դպրոցի շենքի ընդլայնման աշխատանքները։

Կոլտնտեսության արտադրության, հատկապես անասնաբուծության, աշխատատար պրոցեսներից ջրամատակարարումը, կերի ու գոմաղբի փոխադրումը մեքենայացված են։

Հաշվարկումները ցույց տվեցին, որ վերջին հինգ տարում Ստալինի անվան կոլտնտեսությունում աշխօրի միջին արժեքը (դրամը և բնամթերքը միասին) կազմել է 45 ռուբլի 43 կոպեկ և նույն տարիներին աշխօրի ամենից ցածր արժեքը եղել է 1953 թվականին և կազմել 27 ռուբլի։

Ընդունելով աշխատանքի գնահատման նշված ցուցանիշները որպես վարձատրման միջին ցուցանիշ, դրա 55 տոկոսը, որը կազմում է 25 ռուբլի, նպատակահարմար գտնվեց այն վերցնել որպես աշխատանքի վար-

ձատրության երաշխավորված մինիմում, և
դրվեց աշխատանքների դրամական գնահա-
տումների հիմքում։
Կոլտնտեսությունում պահպանվեցին աշ-
խատանքների գնահատման նախկին խմբե-
րը՝ դաշտավարության մեջ 9-ը, այգեգործու-
թյան, պտղաբուծության մեջ 7-ը խումբ և
սահմանվեց, որ այն աշխատանքները, ո-
րոնց օրվա արտադրական նորման կատա-
րելու համար նախկինում (3-րդ խումբ)
գրանցվում էր մեկ աշխօր, այժմ պետք է
գրանցվի 25 ռուբլի, կամ առաջին խմբի աշ-
խատանքների համար՝ 12 ռ. 50 կոպեկ, 7-րդ
խմբի համար 50 ռուբլի և 9-րդ խմբի համար՝
62 ռ. 50 կոպեկ։
Անասնաբուծության մեջ դրամական
գնահատումները սահմանվեցին մեկ միավոր
արտադրանքի ստացված և պահպանված
մատղաշի համար և այլն։
Ելնելով աշխատանքային նորմաների դրա-
մական գնահատումներից՝ սկսած անցյալ
տարվա հուլիսից, կոլտնտեսականների կող-
մից կատարված բոլոր աշխատանքները
բրիգադիրների և ֆերմաների վարիչների կող-
մից հաշվի է առնվում օրական և այն գնա-
հատվում ոչ թե աշխօրերով, այլ դրամով։
Յուրաքանչյուր ամսվա վերջում կոլտնտեսու-



թյան հաշվապահությունը ստանալով կա-
տարված աշխատանքների հաշվառման տե-
ղեկագիրը, ամփոփում և մինչև հաջորդ
ամսվա 10—15-ը վճարում կոլտնտեսական-
ներին նրանց անցած ամսվա հասանելիք
վաստակը, երաշխավորված մինիմումի հաշ-
վով, այսինքն 25 ռուբլով։
Վարձատրման նման կարգի պայմաննե-
րում կոլտնտեսականները 1958 թվականին
յուրաքանչյուր ամիս ժամանակին և անխա-
փան ստացան իրենց հասանելիք վարձա-
տրությունը երաշխավորված մինիմումի
հաշվով։
Տարվա վերջին ամփոփելով կոլտնտեսու-
թյան ամբողջ եկամուտները և այդ եկա-
մուտների դիմաց կատարված ծախսումնե-
րը, պարզվեց, որ կոլտնտեսության վարչու-
թյունը հնարավորություն ունի կոլտնտեսա-
կաններին տալու լրացուցիչ վաստակած
ռուբլու դիմաց ևս 90 կոպեկ, կամ մեկ օրվա
արտադրական նորմայի գնահատումը երաշ-
խավորված մինիմումի 25 ռուբլուց հասցնել
ընդհանուր գումարով 48 ռուբլի 50 կոպեկի։
Ուրիշ խոսքով կոլտնտեսականներին վճար-
վեց վարձատրման ամբողջ ֆոնդի և տարվա
ընթացքում նրանց վճարած վարձատրության
տարբերությունը։

Կոլտնտեսությունում մեկ աշխատունակի միջին տարեկան վաստակը կազմեց երաշխավորված մինիմումի հաշվով 5350 ռուբլի, իսկ վերջնական հաշվով 10.380 ռուբլի։

Անցնելով վարձատրման նոր կարգին, փոխվեցին աշխատանքի դիմաց մթերքների բաշխման կարգը։ Եթե մինչ այդ, աշխօրերով վարձատրման ժամանակ՝ աշխատանքի դիմաց հասանելիք մթերքը կոլտնտեսականները պետք է անպայման ստանային, ապա այժմ վարձատրության նոր կարգի ժամանակ կոլտնտեսականը այն պետք է գնի կոլտնտեսության կողմից նախօրոք սահմանված նորմաներով և գներով։

Դրամական երաշխավորված վարձատրության գործում ձեռք բերելով զգալի փորձ, ընթացիկ տարում կոլտնտեսությունում ավելի բարելավվեց վարձատրության գործը։

Նկատի ունենալով, որ հատկապես տարվա առաջին ամիսներին կոլտնտեսությունում ստացվող դրամական եկամուտները լիովին չեն ապահովում կոլտնտեսականների աշխատանքի վարձատրությունը, ուստի այն ժամանակին և անխափան կազմակերպելու համար երկու տարի առաջ ստեղծված վարձատրության փոխանցիկ ֆոնդը լրացվեց ևս 125 հազար ռուբլով և առ 1-ը հուն-



վարի 1959 թ. կազմեց 294 հազար ռուբլի, որը հնարավորություն տվեց ավելի լավ ապահովել ընթացիկ տարվա առաջին ամիսների վարձատրությունը։ Արդեն կոլտնտեսականներին վճարված է հունվարից մինչև օգոստոս ամիսների վարձատրությունը։ Նրանց վաճառված է նաև որոշ քանակությամբ կաթնամթերք և հացահատիկ կոլտնտեսության կողմից սահմանված նորմաներով, վաստակած յուրաքանչյուր ռուբլու դիմաց։

Վարձատրության այդ պրոգրեսիվ ձևը կոլտնտեսության ձեռնարկած մյուս բոլոր միջոցառումների հետ միասին նպաստել է աշխատանքի արտադրողականության զգալի աճին։ Այսպես, անցյալ տարի խաղողի բերքահավաքի մեկ ցենտների վրա 20,7 տոկոսով և այգեթաղի մեկ հեկտարի վրա 12,1 տոկոսով ավելի պակաս մարդ օր է ծախսվել քան 1957 թվականին ։ Ընթացիկ տարում, 1957 թվականի հետ համեմատած, մեկ հեկտարի վրա մարդ-օրերի թիվը պակասել է այգեբացի աշխատանքների գծով՝ 44,1 տոկոսով, թմբային այգեփորի գծով՝ 3,9 տոկոսով և այգեէտի գծով 27,9 տոկոսով։

Զգալի չափով ավելացել է կոլտնտեսականների մասնակցությունը հանրային աշ-

խատանքներին և բարձրացել նրանց կողմից արտադրական նորմաների կատարումը, որի հետևանքով գյուղատնտեսական աշխատանքների զգալի մասը կատարվում է ավելի սեղմ ժամկետներում և բարձր որակով։

Կոլտնտեսության վարչությունը դրամական վարձատրության արմատավորման հետ միասին ձեռնարկել է մի շարք միջոցառումներ, որոնք է՛լ ավելի են բարձրացնում կոլտնտեսականների անձնական շահագրգռվածությունը հանրային տնտեսության է՛լ ավելի ամրապնդման գործում։ Նախ տարվա վերջին կոլտնտեսությունում աշխատանքի դիմաց հասանելիք վերջնական վարձատրությունը բուսաբուծության բնագավառում աշխատող կոլտնտեսականներին տրվում է ելնելով բրիգադայի պլանային առաջադրանքների կատարումից։ Ելնելով դրանից 1958 թվականի արդյունքները ամփոփելիս բուսաբուծության բնագավառի աշխատողներին, պլանային առաջադրանքները գերակատարելու համար ավել է գրանցված 33 հազար 500 ռուբլի, իսկ պլանային առաջադրանքները թերակատարողներից ետ է պահված 83 հազար ռուբլի։

Ընթացիկ տարվանից կոլտնտեսությու-



նում սահմանված է կարգ, որի դեպքում այն կոլտնտեսականները, որոնք տարվա մեջ անհարգելի պատճառով լրիվ չեն մասնակցի կոլտնտեսության աշխատանքներին, նրանք կվարձատրվեն միմիայն երաշխավորված մինիմումի հաշվով և տարվա վերջին բաշխման ենթակա լրացուցիչ եկամուտներից չեն օգտվի։

Տնտեսության վերելքը, բերքատվության և հատկապես անասնաբուծության մթերատվության անընդհատ աճը հնարավորություն տվեց կոլտնտեսության վարչությանը որոշում ընդունելու կոլտնտեսականներին յուրաքանչյուր օր կաթ վաճառելու պետական գնման գներով, նրանց անձնական սպառման կարիքների համար։

Այդ իսկ պատճառով ընթացիկ տարվա սկզբից կոլտնտեսականները աստիճանաբար հրաժարվեցին իրենց անձնական տնտեսությունում սեփական կով պահելուց՝ վաճառելով այն կոլտնտեսությանը։

Կոլտնտեսային շինարարության նման և այլ բարեփոխությունները զգալի չափով նպաստում են կոլտնտեսականների անձնական շահագրգռվածության բարձրացմանը, հանրային տնտեսության ամրապնդմանը։

———

# ԳԵՐՄԱՆԱԿԱՆ ԴԵՄՈԿՐԱՏԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ 10 ՏԱՐԻՆ

*Մ. ՎԱՍԻԼԵՎ*

Հոկտեմբերի 7-ին Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի աշխատավորները նշում են իրենց բանվորա-գյուղացիական պետության 10-րդ տարեդարձը:

Հիտլերյան ֆաշիզմի դեմ երկրորդ համաշխարհային պատերազմում Սովետական Միության և նրա հետ հակահիտլերյան կոալիցիայում միավորված ժողովուրդների տարած համաշխարհային—պատմական հաղթանակը պատմական շրջադարձի սկիզբ դրեց գերմանական բանվոր դասակարգի և ամբողջ գերմանական ժողովրդի ազատագրական պայքարում:

1949 թվականին Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի կազմավորումով նոր դարագլուխ բացվեց գերմանական ժողովրդի պատմության մեջ: Գերմանական նախկին պետությունները, որոնց մեջ թագա-



վորում էին շահագործող դասակարգերը, կրում էին խիստ արտահայտված ագրեսիվ բնույթ: Բավական է հիշել, որ հատկապես իմպերիալիստական Գերմանիան 50 տարվա ընթացքում սանձազերծեց երկու արյունոտ համաշխարհային պատերազմ: Այսօր հանձինս Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի աճում ու ամրապնդվում է նոր Գերմանիան՝ խաղաղության ու աշխատանքի, դեմոկրատիայի ու սոցիալիզմի ռեսպուբլիկան:

«ԳԴՌ-ի կազմավորման պատմական նշանակությունն այն է,— ասված է ԳԴՌ-ի հիմնադրման 10-ամյակի առթիվ Գերմանիայի Սոցիալիստական միասնական պարտիայի Կենտկոմի Քաղբյուրոյի ընդունած թեզիսների մեջ,— որ նա դրել է առաջիկա խաղաղասիրական ու դեմոկրատական միասնական գերմանական պետության անկյունաքարը»:

ԳԴՌ-ի տասնամյա գոյությունը լրիվին արդարացրել է այն հույսերը, որ աշխարհի ժողովուրդները դրել են գերմանական ժողովրդի սոցիալիստական ուժերի վրա: Բանվոր դասակարգի ավանգարդի՝ Գերմանիայի մարքս-լենինյան Սոցիալիստական միասնական պարտիայի ղեկավարությամբ

ԳԴՌ-ում ստեղծվել ու ամրապնդվել է դեմոկրատական Գերմանիայի Ազգային ճակատը, որի մեջ մտնում են հինգ քաղաքական պարտիաներ և մի շարք հասարակական կազմակերպություններ, որոնք ներկայացնում են ազգաբնակչության բոլոր ուժերը։ Հանուն խաղաղության, հանուն սոցիալիզմի մղած պայքարում աշխատավորության համախմբվածության և միասնության ցայտուն օրինակ է հանդիսանում 1958 թվականի նոյեմբերին անցկացված ԳԴՌ-ի օրենսդրական օրգանի՝ Ժողովրդական պալատի ընտրությունները, որի ժամանակ ընտրություններին մասնակցած քաղաքացիների 99,87 տոկոսը քվեարկեցին Ազգային ճակատի թեկնածուների օգտին։

18 միլիոն մարդ բնակչություն ունեցող Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկան իրենից ներկայացնում է բարձր զարգացում ունեցող մի ինդուստրիալ պետություն։ Արդյունաբերության արտադրանքի ընդհանուր ծավալով նա Եվրոպայում բռնում է հինգերորդ տեղը և գտնվում է աշխարհի ամենազարգացած արդյունաբերական երկրների թվում։ Իրագործելով գերմանական ժողովրդի մեծ զավակների՝ Մարքսի և Էնգելսի նվիրական իղձերը,



ԳԴՌ-ի աշխատավորները հաջողությամբ կառուցում են սոցիալիստական հասարակարգը։ Աշխատավորության հերոսական ջանքերով ռեսպուբլիկայում դրված են սոցիալիզմի հիմքերը։ Այս տարվա սկզբին արդյունաբերության համախառն արտադրանքի 90 տոկոսը թողարկել են սոցիալիստական ձեռնարկությունները։ Գյուղատնտեսության մեջ սոցիալիստական սեկտորին բաժին է ընկնում ռեսպուբլիկայի ամբողջ հողային տարածությունների գրեթե կես մասը։

Հենվելով Սովետական Միության և մյուս եղբայրական սոցիալիստական երկրների անշահախնդիր օգնության վրա, ԳԴՌ-ին հաջողվել է հաղթահարել տնտեսական այն լուրջ դժվարությունները, որը առաջ է եկել Գերմանիայի բաժանման հետևանքով և լուրջ հաջողություններ ձեռք բերել ժողովրդական տնտեսության զարգացման գործում։

1958 թվականին, 1949 թվականի համեմատությամբ, ԳԴՌ-ի արդյունաբերական արտադրանքը եռապատկվել է։ Տնտեսության զարգացման այդպիսի տեմպեր կապիտալիստական ոչ մի պետություն դեռևս չի տեսել։ Այդ տեմպերը անհասանելի են նաև

Արևմտյան Գերմանիային։ Այսպես, եթե 1958 թվականին, 1957 թվականի համեմատությամբ, Գերմանիայի Ֆեդերատիվ Ռեսպուբլիկայում արդյունաբերական արտադրանքի տարեկան աճը 5,7 տոկոսից իջել է մինչև 3,1 տոկոսի, ապա Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայում այն 7,4 տոկոսից բարձրացել է մինչև 10,9 տոկոսի, իսկ ընթացիկ տարվա առաջին կիսամյակում ԳԴՌ-ի արդյունաբերական արտադրանքի ծավալը, անցած տարվա համապատասխան ժամանակաշրջանի համեմատությամբ, ավելացել է 12,4 տոկոսով։ Այսպիսով, Գերմանիայի տերիտորիայի վրա գտնվող սոցիալական երկու սիստեմների համեմատությունը բացահայտորեն խոսում է ԳԴՌ-ի սոցիալիստական սիստեմի օգտին։ Գերմանիայի Սոցիալիստական միասնական պարտիան, ռեսպուբլիկայի առջև տնտեսական գլխավոր խնդիր է դրել 1961—1962 թ. թ. հասնել և որոշ չափով առաջ անցնել Արևմտյան Գերմանիայի ազգաբնակչության ամեն մի շնչին հասնող սպառման ապրանքների կարևորագույն տեսակների գծով։ Ամեն մի շնչին հասնող սննդամթերքների մի շարք հիմնական տեսակների սպառման տեսակետից ԳԴՌ-ն



արդեն անցյալ տարի գերազանցել է Արևմտյան Գերմանիային։ Յոթնամյա պլանով նախատեսված է ԳԴՌ-ում արդյունաբերական արտադրանքի աճը 1959—1965 թ. թ. ավելացնել 80 տոկոսով։ ԳԴՌ-ի տնտեսության հաջող զարգացմանը նպաստում են նրա լայն տնտեսական կապերը սոցիալիստական երկրների հետ։

Եթե առաջներում ԳԴՌ-ի հակառակորդները, նշելով նրա տնտեսական ժամանակավոր դժվարությունները, գուշակություններ էին անում նրա փլուզման մասին, ապա ներկայումս նրանք ստիպված են ընդունել ԳԴՌ-ի հաջողությունները, նրա ժողովրդա-դեմոկրատական կարգի անսասանությունը։ «Ինչպես ամեն մի ճանապարհորդ, Արևմուտքից ես ԳԴՌ ժամանեցի կանխակարծիքով։ Սակայն ես զարմացել էի։ Խանութները լիքն են ապրանքներով... Տնտեսությունը աճում է ռեկորդային տեմպերով»,— գրում է ֆրանսիական բուրժուական «Էքսպրես» թերթի խմբագիրը։ «Արևելյան Գերմանիա կատարված բազմաթիվ ուղևորությունները հանգեցնում են միայն մեկ եզրակացության՝ արևելա-գերմանական պետությունը չի փլուզվի։ Ժամանակը գործում է ոչ Արևմուտքի օգ-

ուրն»,— դառնությամբ ընդունում է անգլիական «Էկոնոմիստ» ամսագիրը։

Սոցիալիստական շինարարության հաջողությունները ԳԴՌ-ում ունեն պատմական նշանակություն գերմանական ողջ ժողովրդի բախտի նկատմամբ, դրանք ակնառու կերպով ցույց են տալիս ԳԴՌ-ի սոցիալիստական հասարակարգի առավելությունը ԳՖՌ-ի շահագործողական կապիտալիստական կարգի նկատմամբ։ Այդ հաջողությունները անհանգստություն են առաջ բերում Արևմտյան Գերմանիայի իմպերիալիստական շրջաններում, քանի որ գնալով ԳԴՌ-ն դառնում է մի ձգողական ուժ արևմտագերմանական աշխատավորների համար։ Հատկանշական է այն, որ միայն 1959 թվականի առաջին կիսամյակում Արևմտյան Գերմանիայից մշտական բնակության համար ԳԴՌ է տեղափոխվել 40 հազար քաղաքացի, որը վեց անգամ ավելի է, քան անցյալ տարվա նույն ժամանակամիջոցում։

Զբաղված խաղաղ աշխատանքով, գերմանական հողի վրա կառուցելով սոցիալիստական հասարակարգ, ԳԴՌ-ի աշխատավորները չեն մոռանում, որ իրենց հայրենիքի արևմուտքում նորից գլուխ է բարձ-



րացնում արյունարբու գերմանական միլիտարիզմը, որը բացահայտորեն սպառնում է բռնագրավել ԳԴՌ-ն։ Այդ պատճառով էլ Գերմանիայի Սոցիալիստական միասնական պարտիան և ԳԴՌ-ի կառավարությունը մեծ ուշադրություն են դարձնում ռեսպուբլիկայի ազգային անվտանգության ամրապնդման վրա։ Ձեռնարկություններում ստեղծված են զինված բանվորների մարտական խմբեր, որոնք պահպանում են հասարակական կարգ ու կանոնը Արևմտյան Գերմանիայի ամեն տեսակ մատնիչներից ու դիվերսանտներից։ ԳԴՌ-ի ազգային ժողովրդական բանակը հուսալիորեն կանգնած է ռեսպուբլիկայի խաղաղ աշխատանքի պաշտպանության դիրքերում։

ԳԴՌ-ի անվտանգությունը, սուվերենությունը և անկախությունը երաշխավորված են նրա մասնակցությամբ՝ Վարշավայի պայմանագրով կազմակերպված սոցիալիստական երկրների հզոր պաշտպանության դաշինքի մեջ։ «Սոցիալիստական երկրների Արևմտյան սահմանը,— հայտարարեց ընկեր Ն. Ս. Խրուշչովը,— անցնում է այնտեղով, որտեղով անցնում է սահմանը Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի և Գերմանիայի Ֆեդերատիվ Ռես-

պուբլիկայի միջև։ Մենք Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի այդ սահմանը դիտում ենք որպես մեր ընդհանուր սահմանը, որպես մի գիծ, որը սոցիալիզմի աշխարհը բաժանում է կապիտալիզմի աշխարհից»։

ԳԴՌ-ն բարձր է գնահատում և շարունակ ամրապնդում է ստեղծված բարեկամական փոխհարաբերության ամուր կապեր սոցիալիստական երկրների և ամենից առաջ Սովետական Միության հետ։ Այդ փոխադարձ հարաբերությունները խարսխված են պրոլետարական ինտերնացիոնալիզմի, մարքսիզմ-լենինիզմի անսասան սկզբունքների վրա։ «Գերմանական ժողովրդի և Սովետական Միության հավերժ բարեկամությունը,— ասել է ԳՍՄՊ Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Վ. Ուլբրիխտը,— կենսականորեն անհրաժեշտ ազգային հարց է գերմանական ժողովրդի համար»։

ԳԴՌ-ի քաղաքականությունը ելնում է գերմանական տերիտորիայի վրա իրենց հասարակարգով հակադիր երկու պետությունների գոյության ռեալ ֆակտորից։ Դրա համար էլ ԳԴՌ-ն լիակատար հիմունքով Գերմանիայի վերամիավորումը դիտում



է որպես երկու գերմանական պետությունների ներքին գործ։ Այդ վերամիավորումը հնարավոր է միայն ԳԴՌ-ի և ԳՖՌ-ի աստիճանաբար իրար մերձեցման ճանապարհով, գերմանական միլիտարիզմը և իմպերիալիզմը սանձահարելու միջոցով։

Գերմանիայի Սոցիալիստական միասնական պարտիայի Կենտկոմի Քաղբյուրոն իր թեզիսներում ընդգծել է թե առանց սոցիալիզմի հաղթանակի ԳԴՌ-ում և առանց միլիտարիզմի վերացման Արևմտյան Գերմանիայում, անհնարին է Գերմանիայի ազգային վերածնունդը և վերամիավորումը։ ԳՍՄՊ-ն և ԳԴՌ-ի կառավարությունը մշակել են յուրաքանչյուր գերմանացու համար պարզ ու հասկանալի մի ծրագիր լուծելու գերմանական հարցը հանուն խաղաղության պահպանման։

ԳԴՌ-ի խաղաղասիրական արտաքին քաղաքականությունը ապահովում է նրա հեղինակության աճմանը համաշխարհային արենայում։ Դրա համար էլ պատահական չէ, որ տարեցտարի ամրապնդվում է ԳԴՌ-ի միջազգային դրությունը, լայնանում նրա կապերը աշխարհի տարբեր երկրների հետ։ Այսպես, եթե Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկան 1950 թվականին առև-

տրական հարաբերություններ ուներ 74 երկրների հետ, ապա ներկայումս արդեն՝ 136 երկրների հետ։ Միայն կապիտալիստական երկրների հետ ԳԴՌ-ի առևտրական հարաբերությունների թիվը 1952 թվականի 6-ից 1959 թվականին հասել է մինչև 31-ի։ ԳԴՌ-ի ներկայացուցիչները մասնակցում են ավելի քան 120 միջազգային կազմակերպությունների աշխատանքներին։ Ռեսպուբլիկան ճանաչել են 12 պետություն՝ 1 միլիարդ բնակչությամբ։ Ճշմարիտ է, արևմտյան պետությունները հրաժարվում են ճանաչել նրա իրավունքները, սակայն, ինչպես հայտարարել է Ն. Ս. Խրուշչովը «որոշ պետություններ, որոնք ներկայումս չեն ճանաչում ՉԺՌ-ն և ԳԴՌ-ն, դեռևս կթակեն նրա դռները այն ճանաչելու խնդրանքերով...»։

Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի փառապանծ 10-րդ տարեդարձի օրը սովետական մարդիկ նրա աշխատավորներին ցանկանում են նոր հաջողություններ՝ հանուն խաղաղության, հանուն սոցիալիզմի կառուցման համար մղվող պայքարում, հանուն Գերմանիայի ազգային միասնության։

---

ՕԳՏԱԳՈՐԾԻՐ ԶՐՈՒՅՑԻ ԺԱՄԱՆԱԿ

## Ի՞ՆՉ Է ՆՇԱՆԱԿՈՒՄ «ԱՄԵՐԻԿՅԱՆ ԱՊՐԵԼԱԿԵՐՊ»

(Թվեր և փաստեր)

★ Պաշտոնական տվյալների համաձայն 1958—1959 թվականներին ԱՄՆ-ում լրիվ գործազուրկների թիվը 4 միլիոնից պակաս չի եղել, իսկ առանձին դեպքերում այն հասել է մինչև 6 միլիոնի։

★ «Նյու-Յորք պոստ» թերթում հրապարակվել է մի գործազուրկի և նրա ընտանիքի ողբերգության մասին Խ. Մակլեոդի «Սով 1959 թվականին, մի հարց, որ սպասում է իր լուծմանը» հոդվածը։ Հոդվածում ասված է. «Քաղաքում շաբաթ օրվա ամառային շոգ երեկո է։ Ուզում ես շուտով դուրս գալ գրասենյակից, մեկնել քաղաքից, կամ գնալ ծովափ, քիչ հանգստանալ։ Սակայն ոչ Ռամոն Ռոմանը, ոչ նրա կինը և ոչ էլ նրա երեխաները չեն կարող երազել այդ մասին։ Բանը նրանումն է, որ Ռոմանը գործազուրկ է։ Ահա արդեն վեց ամիս է, ինչ նա աշխատանք չունի։ Կերել, սպառվել են մթերքների վերջին մնացորդները, որոնք դեռևս կային Ռոմանի խղճուկ մեկ սենյականոց բնակարանում։ Հարևան

*խանությանը հայտնեց Ռոմանին, որ այլևս ոչ մի բան ապառիկ չի կարող բաց թողնել։*

*Ռոմանը հուսահատության մեջ է։ Հինգշաբթի օրը վերցնելով իր հետ 5 ավագ երեխաներին, ուղևորվում է արևելյան կողմի 67-րդ փողոցի 147 տանը գտնվող սոցիալական ապահովագրության կենտրոնը, որպեսզի օգնություն խնդրի։ Նրան մերժում են։ Զորաժամ վիճելուց հետո նա երեխաներին թողնում է այնտեղ և հեռանում։*

*Որոշ ժամանակ անց ոստիկանությունը ձերբակալում է Ռոմանին, մեղադրելով նրան օրենքը խախտելու մեջ, այսինքն, որ նա իրավունք չուներ երեխաներին թողնել սոցիալական ապահովագրական կենտրոնում։*

*Ռոմանին բանտ են նստեցնում։ Ուրբաթ օրը դատավոր Կալենը Մախետենի դատարանում հայտարարում է, թե Ռոմանը, որը ոչ աշխատանք ունի և ոչ էլ դրամ, կարող է երաշխավորությամբ ազատվել, եթե վճարի 1.000 դոլար։ Ռոմանը նորից բանտ է վերադառնում»։*

★ *«Ներկայումս»— գրել է Նյու-Յորքում հրատարակվող «Ֆորչուն» ամսագիրը,— մոտ 17 միլիոն ամերիկացիներ ապրում են այնպիսի բնակարաններում, որոնք այլևս հնարավոր չէ վերանորոգել։ Դրանք զուրկ են բավարար տաքացումից, լուսավորությունից և ջրամատակարարումից։*

*ԱՄՆ-ի գյուղատնտեսության ֆրոնտի երկու միլիոն*



*բանվորներ ընդհանրապես ոչ մի բնակարան չունեն և ապրում են որտեղ և ինչպես պատահում է։ «Քըլված նկուղներն ու հավանոցները, նրանք ապրում են ինչպես անասունները»— գյուղատնտեսական բանվորների մասին խոսելիս, խոստովանել է ԱՄՆ-ի աշխատանքի մինիստր Միտչելը։*

★ *«Երբ ես ավարտում եմ իմ աշխատանքային օրը,— ասում է Դետրոյտում գտնվող Ֆորդի ավտոգործարանի բանվորներից մեկը, —ես անզոր եմ լինում բերանիս նույնիսկ գդալը մոտեցնել, իմ միակ ձգտումն է անկողին ընկնել և մոռացվել ծանր քնի մեջ»։ ԱՄՆ-ի արդյունաբերության մի շարք ճյուղերում բանվորն ընդունակ է աշխատել ոչ ավելի քան 5—10 տարի։ Իսկ հետո կատարվում է այն, ինչ 1952 թվականին արեց Ֆորդը, հեռացնելով 55 հազար մարդ։*

★ *Միացյալ Նահանգներում ամեն տարի արտադրության մեջ վիրավորվածների և մահացածների կորուստը գերազանցում է այն բոլոր պատերազմներում կրած կորուստներից, որոնց վերջին հարյուր տարվա ընթացքում մասնակցել է ԱՄՆ-ը։*

★ *Ամերիկյան մամուլի տվյալներով Միացյալ Նահանգներում բուժսպասարկման արժեքը գնալով մեծ չափերով աճում է։ Վերջին 10 տարվա ընթացքում հիվանդանոցում պառկելու վարձը ավելացել է ավելի քան երկու անգամ, բուժօգնության համար վճարվող վարձը ավելացել է 40 տոկոսով։*

★ Վերջին հիսնամյակում հոգեկան հիվանդների թիվը ԱՄՆ-ում անընդհատ ավելանում է։ 1954 թվականին այստեղ յուրաքանչյուր 100 բնակչից 16-ը տառապում է հոգեկան խանգարվածությամբ։

★ Կալիֆորնիայի համալսարանին կից Գեների կոմիտեի հաշվարկումների համաձայն, ԱՄՆ-ում 4 հոգուց բաղկացած ընտանիքի ապրուստի մինիմումը կազմում է տարեկան 6 հազար 87 դոլար։ Իսկ մինչդեռ ֆեդերալ օժանդակ սիստեմի տվյալներով 20 միլիոն ընտանիքներ, այսինքն երկրի 5 ընտանիքից մեկը ունի տարեկան 2.000 դոլարից պակաս եկամուտ։ Իսկ 4,5 միլիոն ընտանիքներ ունեն 1.000 դոլարից էլ պակաս եկամուտ։

★ «Նյու-Յորք պոստ» թերթը հուլիսի 26-ին գրել է. «Ոստիկանությունը հաղորդել է, թե Դետրոյտում 5 սպիտակներ մինչև մահվան աստիճան ծեծել են 32 տարեկան մի նեգրի։ Դա տեղի է ունեցել փողոցում ավտոմոբիլային աննշան դեպքից հետո։ Նեգրին ծեծելուց հետո սպիտակները ավտոմեքենայով անցել են նրա վրայով։ Ոստիկանությունը հաղորդում է, որ սպիտակները նեգրին ծեծել են ճիպոտներով, ձեռնափայտերով և գարեջրի շշերով»։

Նույն այդ թերթը հուլիսի 26-ին տպագրել է մի թղթակցություն, որի մեջ հաղորդվում է. «Հնդկական հինգ քաղաքացիներ, որոնցից 3-ը Վաշինգտոնի հնդկական դեսպանության աշխատակիցներ են եղել, չեն թույլատրվել ծովափ գնալու։ Հինգ հոգուց մեկը՝



Շամշեդ Սինգը պատմեց, որ նրանց ծովափից վռնդել են նրա համար, որ նրանք թուխ մորթ ունեն»։

★ Ամերիկյան «Ֆորչուն» ամսագրի տվյալներով երկրում կան 150 մարդ, որոնցից յուրաքանչյուրի կարողությունը գնահատվում է 50 միլիոն դոլարից ավելի։ Դա նշանակում է, որ այդ օլիգարխներից ամեն մեկը տարեկան ստանում է մեկ միլիոն դոլարից ոչ պակաս։ Ամսագիրը բերում է հարուստ մարդկանց 76 ամենահարուստների ցուցակը, որոնց անձնական կարողությունը անցնում է 75 միլիոն դոլարից։ Ռոկֆելլերների հարստությունը ամսագիրը գնահատում է 2 միլիարդ դոլար, նրանց մի փոքր զիջում են Մելոնները։ Մեկ միլիարդ դոլար է հանդչում Դյուպոնների ընտանիքների դրամարկղներում։

Միլիարդատեր Դյուպոնների ընտանիքը տիրապետում է 24 պալատների և վիլլաների, որոնք գնահատվում են 150 միլիոն դոլար։ Տասնյակ պալատներ ու վիլլաներ ունեն Ռոկֆելլերների ընտանիքը։ Այդ ընտանիքների միայն մի առանձնատանում սպասարկում են մոտ 350 ծառա և այլն։

---

# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. ՅՈԹՆԱՄՅԱԿԸ ԿԱՏԱՐԵՆՔ ԺԱՄԿԵՏԻՑ ՇՈՒՏ ԵՎ ԲԱՐՁՐ ՑՈՒՑԱՆԻՇՆԵՐՈՎ

### Գրականություն

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ.— ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանի գլխավոր խնդիրները, *ՍՄԿԿ XXI համագումարին տված զեկուցումից, էջ 17—69, Հայպետհրատ, 1959։*

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXI համագումարի բանաձևը, *էջ 10—26, Հայպետհրատ, 1959։*

Ս. Հ. ԹՈՎՄԱՍՅԱՆ.— Հետևողականորեն կենսագործենք ՍՄԿԿ Կենտկոմի Հունիսյան պլենումի որոշումները, *տպագրված «Լենինյան ուղիով» ամսագրի 1959 թվականի 7-րդ համարում։*

Ապահովել աշխատանքի արտադրողականության աճը, *«Ս. Հ.»-ի 1959 թվականի օգոստոսի 28-ի առաջնորդողը։*



## 2. Վ. ԳԱԳԱՆՈՎԱՅԻ ՆԱԽԱՁԵՌՆՈՒԹՅԱՆ ԱՐՄԱՏԱՎՈՐՈՒՄԸ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ՄԵՋ

### Գրականություն

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ.— Կոմունիզմի գործին ոգեշնչված ծառայելու օրինակ, ճառ Ռոստովի մարզի Վյոշենսկայա ստանիցիայում տեղի ունեցած միտինգում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի սեպտեմբերի 2-ի և «Ավանգարդ»-ի նույն թվականի սեպտեմբերի 3-ի համարներում։*

ՍՄԿԿ Կենտկոմի Հունիսյան պլենումի որոշումը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի հուլիսի 1-ի համարում։*

Ավելի համարձակորեն թափանցել կյանքի մեջ, *«Պրավդա»-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի օգոստոսի 29-ի համարում։*

Ինչպես անցկացնել զրույց Վալենտինա Գագանովայի նախաձեռնության մասին, *տպագրված «Ագիտատորի բլոկնոտ»-ի 1959 թվականի 17-րդ համարում։*

## 3. ԱՐԺԱՆԱՎԱՅԵԼ ԳՈՐԾԵՐՈՎ ԴԻՄԱՎՈՐԵՆՔ ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՌԱՋԻԿԱ ՊԼԵՆՈՒՄԸ

### Գրականություն

Հաղորդագրություն ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեի պլենում գումարելու մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի հուլիսի 15-ի համարում։*

ՍՄԿԿ XXI համագումարի նշած ուղիով, *«Պրավդա»-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի հուլիսի 16-ի համարում։*

Դեպի ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը *«Պրավդա»-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 վթականի օգոստոսի 14-ի համարում։*

### *4. ՏԵԽՆԻԿԱԿԱՆ ՊՐՈԳՐԵՍԸ ՄԵՐ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅՈՒՄ*

#### Գրականություն

Ս. Հ. ԹՈՎՄԱՍՅԱՆ.— *Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության զարգացումը յոթնամյակում, ՀԿՊ XX համագումարին տված զեկուցումից, Հայպետհրատ, 1959։*

ՅԱ. ԶԱՐՈԲՅԱՆ.— Առավել ուշադրություն տեխնիկական պրոգրեսին, *հոդված, տպագրված «Լենինյան ուղիով» ամսագրի 1959 թվականի 5-րդ համարում։*

Հայաստանի Կոմպարտիայի Կենտկոմի որոշումը տեխնիկական պրոգրեսի միամսյակ անցկացնելու մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվկանի օգոստոսի 4-ի համարում։*

Լայն ճանապարհ արտադրական պրոցեսների կոմպլեքսային մեքենայացմանն ու ավտոմատացմանը, նյութեր ՍՄԿԿ Կենտկոմի Հունիսյան պլենումի որոշումները կենսագործելու մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի օգոստոսի 5-ի համարում։*



*5. ՉԻՆԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ՏԱՍԸ ՏԱՐԻՆ*

*6. ԳԵՐՄԱՆԱԿԱՆ ԴԵՄՈԿՐԱՏԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ՀՌՉԱԿՈՒՄԸ*

### *7. ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅՈՒՆԸ ՀԱՎԱՍՏԱՐՄՈՒԹՅԱՄԲ ՊԱՇՏՊԱՆՈՒՄ Է ԽԱՂԱՂՈՒԹՅՈՒՆՆ ԱՄԲՈՂՋ ԱՇԽԱՐՀՈՒՄ*

#### Գրականություն

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ.— Խաղաղ գոյակցության գաղափարները կնաղթանակեն, ճառ Ռոստովի մարզի Վյոշենսկայա ստանիցիայում տեղի ունեցած միտինգում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի սեպտեմբերի 2-ի համարում։*

Ամեն ինչ անել մարդկանց ճանգիստ ու խաղաղ կյանքի համար, *«Պրավդա»-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի սեպտեմբերի 3-ի համարում։*

Խմբագիր՝ Վ. ԲԶՆՈՒՆԻ

## СОДЕРЖАНИЕ



**ЦК КП Армении**

**Отдел пропаганды и агитации**

**БЛОКНОТ АГИТАТОРА**

**№ 18** **1959 г.**


*ՎՖ 06573* *Պատվեր 613* *Տիրաժ 8600*

*ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության գլխավոր վարչության 11 տպարան, Երևան Կնունյանցի № 8.*

*Գինը 50 կոպ.*